ծրագրին թէ ոչ ։

Անթուան Փինէի առաջարկով ժողովը լնդհատուեցաւ, որպէսզի խմբակցու-թիւնները կարենան ճշդել իրենց դիրքը ։

Մէկ ու կէս ժամ վերջ երեսփոխանները վերստին հաւաքուելով բացատրութիւն-ներ ուզեցին, որոնց պատասխանեց Վար-վապետը ։

Մենտէս - Ֆրանսի հարցումներուն տր-ուած պատասխանները ծափահարութիւն-ներ խլեցին երեսփոխաններէն ։ Մենտէս դարձեալ պնդեց իր տեսակէտներուն վը-րայ՝ անպատասխան չձգել Մարոքի Թա-գաւորին կոչերը .— Զգել որ Թունուզ եւ Մարոք ամէն օր քիչ մը աւելի հեռանան մեզմէ՝ կը նշանակէ քանդել այն հասա-րակապետութիւնը, զոր կ'ուզենք կազ-մել ։ Անոնք կրնան մեզի օգնել՝ լուծելու ալժերիական հարցը եւ կազմելու ֆրանք-եւ ափրիկեան հասարակապետութիւնը ։

Տէքսոն կը յայտնէ թէ Ընկերվարա-կանները դէմ չեն կառավարութեան եւ թեր պիտի քուէարկեն, որմէ ետք կառա-վարութիւնը վստահութիւն կը շահի 147ի դէմ 286 ձայնով ։

ԸՆԴՀԱՆՈՒՐ ՕՐՈՒԱՆ ԳՈՐԾԱԴՈՒԼԸ

Ինչպէս գրած էինք ուղեւորներու 24 ժամուան գործադուլը տեղի ունեցաւ ։ Զանազան շրջաններու մէջ բանթողներու թիւերը կը տարբերէին ։ Սթրազպուրկի մէջ՝ յիսուն առ հարիւր ։ Սէն Նազէրի մէջ՝ գրեթէ հարիւր առ հարիւր ուղեւորները գործադուլի մէջ էին ։ Փարիզէն 61 ճե-ռնթացներ մեկնեցան ։ Մեծ ճամբաներու շոգեկառքերուն 35 առ հարիւրը միայն ճամբայ ելաւ ։ Այսուհանդերձ՝ կէսօրէ վերջ որոշ փոփոխութիւն մը արձանա-գրուեցաւ եւ յաւելեալ ճեպընթացներ ճամբայ ելան ։ Բեռնատար շոգեկառքերը կէսօրէ վերջ սկսան երթեւեկի, Արեւել-եան շրջանին մէջ՝ յիսուն առ հարիւր հա-մեմատութեամբ ։ Դէպի Փարիզ ճամբայ ելած ճեպընթացները սովորական ժամուն հասան՝ ուրբաթ առաւօտ ։ Մանաւորա-բար խանգարուած էր Փարիզի եւ ար-ուարձաններու երթեւեկը ։

× Պոնի ֆրանս. դեսպանատան բան-բերներէն մէկը յայտարարեց թէ Գերմա-նիոյ մէջ հաստատուած իր զինուորներուն ծախքերուն համար Ֆրանսա 1958 - 59 տարեշրջանին ալ կը պահանջէ նախորդ տարուան գումարը՝ 225 միլիոն մարք ։

× Ֆրանսական զինուորական երկու օ-դանաւեր ջախջախուեցան Սարտենիոյ բացերը ։

———o———

ՍԱԿԱՐԱՆ (Մարտ 7) .— Զոյլ ոսկի 531.000(532.000), նափոլէոն 3750 (3740), զուից. 3620 (3610), անգլ. 4390 (4370), քառն տոլարնոց 18.240 (18.160), Թղթա-դրամ (զուգահեռական շուկայ) ստեր-լին 1255, տոլար 454, զուից. 107.75, պելժ. 9.25, լիր 8.30, մարք 110 ։ ։

Տէր եւ Տիկին Կարօ Գէորգեան (Պէյ-րութ) ցաւով կը գուժեն յանկարծական մահը իրենց եղբօր՝ Մարսէյլաբնակ ա-ռեւտրական

ՍՏԵՓԱՆ ՎԷՎԷԵԱՆԻ

որ 55 տարեկանին փակեց իր աչքերը փետրուար 24ի գիշերը, իրենց բնակարա-նին մէջ ։

Յուղարկաւորութիւնը կատարուեցաւ յաջորդ օրը եւ հանգուցեալին մարմինը ամփոփուեցաւ Պէյրութի ազգ. գերեզմա-նատունը ։

ԽՄԲ.— Մեր ցաւակցութիւնները ։



Imprimé sur les presses du journal HARATCH

17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

ԱՊՐԻԼԵԱՆ ՍԳԱՏՕՆԸ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Ապրիլ 11/24ի 43րդ տարեդարձը կը տօնուի 24 Ապրիլ հինգշաբթի երեկոյ, Փըթի ժուռնալի սրահին մէջ, 21 բիւ Քատէ, նախաձեռնութեամբ Զափահաս Որբերու Միութեան ։

Մանրամասնութիւնները շուտով ։

×

ԼԻՈՆԻ ՄԷՋ

Ապրիլեան Եղեռնի տօնակատարութիւ-նը Ապրիլ 27ին, կիրակի օր, յետ միջօրէի ժամը 2-6 ։ Նոյն օրը արգիլուած է հար-սանիք, նշանտուք, խնջոյք եւ ուէ հան-դիսութիւն ։ Քահանայ հայրերը կը մնան Լիոն ։ Շրջաններէն ոեւէ դիմում նկատի չառնուիր ։

Մանրամասնութիւնները յաջորդով ։

ՍՈՐՊՈՆԻ ՄԵԾ ԱՄՓԻՏԱԹՐՈՆԸ

Կիրակի, Մարտ 16, ժամը 14.30ին,

ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ

ՊԱՐԻ ԵՒ ԵՐԳԻ ՓԱՌԱՏՕՆ

Բարձր հովանաւորութեամբ՝

ԺԱՆ ՍԱՐԱՅԻ

Նախագահութեամբ՝

ՏԻԿԻՆ ԺԱՆ ՍԱՐԱՅԻ

Կը մասնակցին՝ Ափրիկէ, Հայաստան, Գամբոջա, Կովկաս, Սպանիա, Ամերի-կա, Ֆրանսա, Յունաստան, Հնդկաստան, Ինտոնեզիա, Իսրայէլ, Մատակասկար, Մեքսիքա, Լեհաստան, Վիեթնամ ։

Հայկական ճոխ բաժին, նոր պարերով, նոր հագուստներով, ղեկավարութեամբ Տիկին Յասմիկ Քիւրքճեանի, օժանդա-կութեամբ Օր. Ժիւլիէթ Ախտիխեանի ։

Ի նպաստ Սէնթ Իլէրի ուսանողներու Սանաթօրիոմին ։

Տոմսերը՝ 400, 300, 200, 100 ֆրանք ։ Դիմել Սորպոնի դռնապաններէն ։

ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Կիրակի օրեր, Ս. պատարագէն ետք, Արեւագալի հոգեհանգստեան երգեցողութիւն-ները կը կատարուին խմբական երաժըշ-տութեամբ ։ Եկեղեցական հասարակու-թիւնը կը հրաւիրուի ներկայ գտնուիլ ։

× Հայաստանէն նամակ ունի Յարու-թիւն Տերոյեան ։ Դիմել եկեղեցի ։

Կ'ՈՒԶՈՒԻ՝

Որոշ տարիքի հայ կին մը հիւանդի մը քով մնալու համար ։ Բնակութիւն, սնունդ եւ լաւ վճարում ապահովուած ։ Դիմել Տիկին Հանէսեանի՝ 11 բիւ Լօռէն, Անիէռ (Կառ Պէքոն կէ Պրիւյէռ) կամ հեռաձայ-նել ԿՐԷ. 00-98 ։

ՏՐԱՄԱԴՐԵԼԻ ՍԵՆԵԱԿ

Տրամադրելի սենեակ մը առանձին կնոջ մը համար, որ ընկերութիւն պիտի ընէ նաեւ տանտիրուհիին ։ Դիմել՝ Նորիկեան,

145, Rue des Meuniers, Bagneux



ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս չո-րեքշաբթի իրիկուն ժամը 21ին, Քատէի վերնայարկը ։

Կը խօսի Կ. ՄԵՀԵԱՆ

Նիւթ՝ Աբու Լալա Մահարի (Աւ. Իսա-հակեանի) ։ Մուտքը ազատ է ։

ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ՎԻԷՆԻ ՄԷՋ

Կապոյտ Խաչի մասնաճիւղին տարեկան մեծ պարահանդէսը, ի նպաստ դպրոցնե-րուն, Մարտ 15ին, Շաբաթ, ժամը 21էն առաւօտեան ժամը երկու, Սալ տէ Ֆէթի շքեղ սրահներուն մէջ ։

Առաջնակարգ նուագախումբ ։

CHEF D'ORCHESTRE RÈGIE THEVENET

Սիրով կը հրաւիրուին հասարակութիւ-նը ։ Մուտքը 300 ֆրանք ։

ՅՈՒՇԱՏԵՏՐ

———o———

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Րաֆֆի խումբի ժողովը այս ուրբաթ, ժամը 21ին, Ռե-ժանի վերնայարկը ։ Կարեւոր օրակարգ ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը ան-հրաժեշտ է ։

ԱՆԻԷՌ - ՊՈՒԱ ՔՈԼՈՄՊ.— Ֆ. Կ. Խա-չի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս եր-կուշաբթի ժամը 17ին, Տիկին Գասպ-եանի բնակարանը, 7 բիւ Ռընան, Անիէռ (Սէն), (Փլաս Վօլթէրի մօտ) ։ Օրակարգ՝ ընտրութիւն նոր վարչութեան ։

ԶԱՏԻԿ ՄԱՐՍԷՅԼԻ

Հ. Մ. Ը. Մ.

ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

"AU CLUB" 51, RUE GRIGNAN

գրական ծախքերը 18րդ դարու կամ գոնէ 19րդ դարու պատմական, լեզուական, բառարանային, գիտական կամ գիւտական ձեռագիրներուն: Եթէ այո, այն ատեն անտարակոյս Ս. Ղազարու եւ Երուսաղէմի վանքերը պիտի չմերժէին իրենց մատենադարաններէն բնագիրներ տրամադրել: Եթէ անոնք մերժեն, տրամադրելի է իմ հաւաքածոս, ուր բաւական նիւթեր կան, ինչպէս Եւկլիտէսի երկրաչափութեան թարգմանութիւնը (ձեռագիր եւ պատկերազարդ), Գէորգ Տիրացէսի ժամանակագրութեան յունարէնէ թարգմանութիւնը Մելքիսեդեկ թարգմանչի ձեռամբ, Գաբրիէլ Պատկանեանի ինքնակենսագրութիւնը (ինքնագիր) եւ նամակները, Խորբերդի առաջնորդ Արիստակէս Դերձակեանի նամակներուն հաւաքածոն, վերջապէս բազմաթիւ ձեռագիրներ՝ ուղեգրական ու ժամանակագրական, որոնք խնամով կը պահուին իմ հաւաքածոյիս մէջ:

Դարձեալ, գիւտական եւ այլ նիւթեր կան, անտիպ ձեռագիրներու հետ, Փարիզի Նուպարեան մատենադարանին մէջ կամ հոս ու հոն, նոյնիսկ Գահիրէ: Նիւթեր կան նաեւ Պոլսոյ, Նոր Ջուղայի մէջ եւ այլուր: Անոնց հրատարակութիւնը կենսական է: Իրաւունք ունի՞նք պահանջելու դաշնակցական մամուլէն, որ ըստ առանձնէ այս ձեռագիրներուն, գոնէ կարեւորագոյններուն հրատարակութիւնը:

Կը կարծեմ, թէ այո: Իրաւունք ունինք նոյնը պահանջելու նաեւ ռամկավար եւ հնչակեան մամուլէն:

Սակայն իրաւունք ունենալը չի բաւեր: Խնդիր է, թէ կա՞յ գիտակցութիւն, մանաւանդ կարողութիւն՝ գլուխ հանելու այս գործը: Իրեն՝ այդ մամուլին կը մնայ պատասխանել մեր հարցումին:

Բացի կուսակցական մամուլէն, կան մշակութային անջատ հաստատութիւններ ալ, որոնք կրնան կատարել մեր առաջարկած հրատարակչ. գործը: Պէյրութի «Համազգային»ը, ժրաջան ու եռանդուն Վահէ Սէթեանի նախաձեռնութեամբ, կը թուի թէ մտադիր է գործի սկսելու, առայժմ իր տրամադրութեան տակ գտնուած համեստ միջոցներով: Հրատարակութեան համար նշանակուած են արդէն երկու գործեր, որոնցմէ մին է 1387ին գրուած բառգիրքը, որ մաս կը կազմէ իմ հաւաքածոյիս:

Վերջապէս կը հասնինք Բարեգործականին:

Բնական է, որ մեր ոչ-կուսակցական հարուստ ալ, միջակ դասակարգն ալ իր նիւթական միջոցները տրամադրէ ամէն կերպով վստահութիւն շահիլ ուզող եւ ոչ կուսակցական երեւցող Բարեգործականին: Իսկ Բարեգործականը, լաւ ըմբռնելով ազգային մտայնութիւնը, ինքզինք պարտադրեց իբր մենատէր, առանձնաշնորհեալ կազմակերպութիւն մը: Ոչ-կուսակցական եւ անառաջնորդ դանդուածները, ինչպէս Մելքոնեանները, կամայ կամ ակամայ իրենց հարստութիւնը ստիպուեցան կտակել Բարեգործականին:

Եւ որովհետեւ, բացի կուսակցական կազմակերպութիւններէ, չկար որեւէ լուրջ կազմակերպութիւն մը համազգային նշանակութեամբ, Բարեգործականի վարիչները, վերջին տասը կամ քիչ մը աւելի տարիներուն, օգտագործեցին նիւթապէս չհարեր երրորդ աղբիւր մը, — հայ մշակոյթը, գիրն ու գիրքը: Բարեգործականը կրցաւ այս մարզին մէջ ալ յաջողիլ, խոշոր գումարներ կորզելով եւ իւրացնելով յանուն գիրի ու գիրքի:

Հայ հասարակութեան մշակութասէր եւ ունեւոր դասակարգը նիւթապէս սատարեց Բարեգործականի ձեռնարկած «արշաւ»ներուն՝ յանուն մշակոյթի: Մեծ գումարներ հաւաքուեցան կամ նուիրուեցան, բայց նուիրահաւաքներէն հաշուետուութիւն ուզող չեղաւ: Նուիրատուները ոչ քաջութիւնը եւ ոչ ալ կարողութիւնը ունեցան պահանջելու, որ Բարեգործականը մշակոյթի համար հաւաքած իր գումարները ծախսէ միայն մշակոյթի համար:

Մելքոնեանի կամ Լազարեանի կտակները չյատկացուեցան առաջադրուած նպատակներուն, եւ բնական է, որ մեռած կտակարարները չէին կրնար հաշիւ պահանջել: Մելքոնեան կտակէն պէտք է ամէն տարի կարեւոր գումար մը ղրկուէր Երեւան, հայագիտական գործերու հրատարակութեան համար: Ատեն մը, իրաւամբ, ղրկուեցաւ, սակայն ետքէն Երեւան մերժեց կտակագրամը, որ այս անգամ իբր թէ Փարիզի Նուպարեան Մատենադարանին տրամադրուեցաւ՝ նոյն նպատակին յատկացուելու համար: Տարեկան քանի մը հազար ոսկիի հասնող այս գումարով հազիւ 3 – 4 հատոր հրատարակուեցաւ, ինչպէս, օրինակ, Զօպանեանի եւ Սաղըզեանի արդէն հրատարակուած գործերը: Լազարեան վարդապետի հիմնադրամով ալ, տարիներ ետք, Սմբատ Սպարապետի «Տարեգիրք»ը միայն հրատարակուեցաւ, փառք Աստուծոյ:

Աւելին կայ, սակայն:

Յ. ՔԻՐՏԵԱՆ

(Շար.)

# ՄԻՏՔ ԵՒ ԱՐՈՒԵՍՏ

## ՄԵԾ ՆԿԱՐԻՉԸ ՌՈՒՕ

Ինչպէս գրած էինք վերջերս մեռաւ Ֆրանսացի մեծ նկարիչ Ռուօ, 86 տարեկանին: Իր մեծագոյն նպատակն էր գծել Քրիստոսի դիմանկարը, որ ըլլար խորապէս տպաւորիչ: Որքան ժամանակը կ'անցնէր, Ռուօյի մէջ այնքան կը խորանար այս ազդումը, որովհետեւ հաւատացեալ մըն էր ան: Ձինքը կը նմանցնեն պատմութեան առաջին քրիստոնեաներուն:

Փարիզի արուարձաններէն մէկուն մէջ աշխատող ատաղձագործի մը տղան էր Ռուօ: Աղքատ՝ ի վիճակի չէր նոյնիսկ գծագրութեան թուղթ գնելու: Այսուհանդերձ, 14 տարեկանին արդէն կ'երազէր նկարիչ ըլլալ: Խոհանոցին պատերը կաւիճով կը գծէր չարունակ: 1885ին (14 տարեկան) Փարիզի մէջ աշկերտ կ'ըլլայ ապակենկարիչի մը քով, չաբաթական մէկ ֆրանք աշխատավարձքով:

Երբ չաբաթականը կը բարձրանայ հինգ ֆրանքի, կը սկսի հետեւիլ գիշերային դասընթացքներու: 20 տարեկանին կը հեռանայ ապակենկարիչին քովէն՝ արձանագրուելու համար Գեղարուեստից վարժարանը:

Թշուառ վիճակ մը ունէր, գրեթէ անօթի: Իր վարպետը՝ Մորօ կը քաջալերէ զինքը, յատկապէս՝ կրօնական գործեր նկարելու մէջ: Հայրական հոգածութիւն մը ցոյց կուտայ իր աշակերտին հանդէպ, անոր տալով գործածուած զգեստներ եւ դրամ «փոխ» տալով:

Իր ծերունի վարպետին քով հետզհետէ կրօնական նկարչութեան մեծագոյն յոյսերէն մէկը կը դառնայ, իւրացնելով միաժամանակ Մորոյի ոճը:

Վարպետին մահէն վերջ կ'անդրադառնայ որ հարկ էր փոխել իր ոճը, որ կու գար Մորոյէն: Կը զգայ որ հարկ էր նոր բան մը ստեղծել եւ այս գաղափարը կը խռովէ իր հոգին. կը տառապի:

Այս հոգեփոխութեան ընթացքին կը հիւանդանայ մինչեւ այն օրը՝ երբ վերջնապէս կը վճռէ ձերբազատուիլ վարպետին ոճէն: 1903.— Կ'որոշէ նկարել իր ոճով եւ այն նիւթերը՝ որ խորապէս կ'ազդեն իր վրայ:

Այդ թուականէն սկսեալ մեկուսի կեանք մը կը վարէ, չարունակ աշխատելով: Քիչ էր թիւը այն բարեկամներուն՝ որ կը ճանչնային Փարիզի իր բնակարանը: Ամէն առաւօտ, բացի Կիրակի օրերէն (որովհետեւ եկեղեցի կ'երթար) կը մտնէր իր աշխատանոցը եւ կը նկարէր մինչեւ իրիկուն, կինն ու զաւակները երբեքիրաւունք չէին ունեցած մտնելու իր աշխատանոցը եւ ընդհատելու իր գործը:

Այս շրջանին կը սկսի ստեղծել նկարչութեան իւրայատուկ ոճ մը: Կը նկարէ Քրիստոսի դիմանկարներ. Քրիստոս՝ տառապող, ծաղրուծանակի՝ առարկայ, մտրակուած, խաչուած: Այս բոլորը կը պարզեն արուեստագէտին հոգին՝ խորապէս հաւատացեալ: Կը զգայ որ Քրիստոս դարձեալ կը մտրակուի, կը խաչուի, ամէն անգամ՝ երբ մարդիկ կը հեռանան Անկէ: Իր բազմաթիւ գործերը կը գլեն կ'անցնին իրապաշտութիւնը, դառնալու համար Ցաւի Մարդուն խորհրդանշանը:

Նկարած է նաեւ աղտոտ թաղեր, վատահամբաւ աղջիկներ: Մեծ գիծերով եւ ծիրանի ու կապոյտ գոյներով աղջիկներու դիմանկարները բարոյազուրկ մարդկութեան խորհրդանիշը դարձան:

Քննադատները անդրադառնալով իր գործին կը գրեն.— Հարկ է երթալ մինչեւ ԺԳ. դար՝ գտնելու համար այսքան մեծութիւն, եւ կրօնական խանդ:

Ռուօյի իւրաքանչիւր պաստառին գինը բարձրացաւ մինչեւ տասներկու միլիոնի: Այսուհանդերձ, քանի մը տարի առաջ այրեց իր վեց հարիւր գործերը՝ իրեն արժանի չդտնելով զանոնք:

———o———

## «ԿՈՄԻՏԱՍ» ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ 25ԱՄԵԱԿԸ

ԽՄԲ.— Պուքրէշի «Նոր կեանք»էն կը քաղենք.—

25 տարին լրացաւ այն օրէն, երբ Պուլկարիոյ Ռուսէ քաղաքին մէջ կազմուեցաւ գաղութին գեղարուեստական լաւագոյն խումբերէն մէկը՝ «Կոմիտաս» երգչախումբը:

Պուլկարիոյ Հայութիւնը լծուած է մշակութային ներուժ աշխատանքի մը. «Երեւան» մշակութային միութեան բազմաթիւ մասնաճիւղերը մեծ դեր ունին գաղութին գեղարուեստական կեանքին մէջ: Այս բոլորին մէջ սակայն գլխաւոր տեղը կը գրաւէ Ռուսէ քաղաքի «Կոմիտաս» երգչախումբը:

1932 Հոկտեմբերին հիմնուեցաւ այս երգչախումբը եւ հետզհետէ զարգացաւ. անդամներուն թիւը 25էն բարձրացաւ վաթսունի: Առաջին համերգը տուաւ 1934 Յունիս երեքին՝ Ռուսէի հայ ազգաբնակչութեան:

«Երեւան» մշակութային միութեան ստեղծումէն ետք (1944) «Կոմիտաս» երգչախումբ դարձաւ մշակութային այս կազմակերպութեան Ռուսէի մասնաճիւղը: Ունեցած է արդիւնաւոր գործունէութիւն:

Տարեկան համերգներ տուած է Փլովտիւի, Սոֆիայի, Վառնայի, Սիլիստրէյի եւ Պուլկարիոյ այլ քաղաքներուն մէջ: Երգչախումբը յատուկ համերգներ տուած է նաեւ Կոմիտաս վարդապետի յիշատակին, միաժամանակ մասնակցելով հայկական օփերաներու ներկայացման:

Արժէքաւոր մեներգիչներ կան երգչախումբին մէջ, որուն յայտագիրին մաս կը կազմեն առաւելապէս հայկական, պուլկարական եւ դասական ստեղծագործութիւններ:

## ՀԱՅԱՍՏԱՆ

ԵՐԵՒԱՆԻ մէջ աւարտած է ձմեռնային մարզական լողաւազանի մը շինութիւնը: Այս առթիւ տեղի ունեցած են լողորդութեան բազմաթիւ մրցումներ եւ ջրագնդակի խաղ: Այս առթիւ յիշեցնենք, որ Հայաստանի լողորդութեան ախոյեաններն են՝ Վանիկ Փիլոյեան եւ Ռազմիկ Մկրտիչեան:

«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (146)

# ԿԱՅԾԵՐ

ԽԱ.

### ՍԻՐՈՅ ՊԱՏԵՐԱԶՄԸ

Ես ճանապարհին հազիւ կարողացայ մտաբերել, թէ որքան անքաղաքավարի կերպով բաժանուեցայ Մարոյից: Ես նրան ոչ մի խօսք չասացի. նա այնքան տեղ եկաւ ինձ հետ, նայում էր իմ վրայ, սպասում էր մի քաղցր խօսք լսել: Ես մտաբերեցի, որ իմ հեռանալուց յետոյ, նա իսկոյն չվերադարձաւ դէպի վրանը, այլ նստեց ճանապարհի մօտ մի քարի վրայ: Ես այժմս էլ յիշում եմ, թէ ինչպէս գլուխը քարշ գցած, նստած էր նա: Ես հարցրի Մըհէից: Մըհէն Մարոյի մօտ էր, նա յետոյ եկաւ եւ հասաւ ինձ: — «Նա լաց էր լինում», ասաց իմ ուղեցոյց հերքուլէսը:

— Ի՞նչու էր լաց լինում, Մըհէ:

— Սատանան գիտէ, թէ աղջիկը ինչու լաց կը լինի...:

Մըհէն, ինչպէս առաջ ես մտածում էի, այնքան յիմար չէր. նա երեւաց ինձ խիստ ծածկամիտ մի մարդ: Որովհետեւ որքան ես աշխատեցի նրանից դուրս քաշել մի խօսք թէ ինչ նպատակ ունէր նրա թափառելը մի օր այստեղ, միւս օր այնտեղ,— նա ոչինչ չյայտնեց, տուեց միայն մի քանի արհամարհական պատասխաններ, ասելով.— «Եթէ շատ բան գիտենաս, շուտ կը պառաւես»:

Առաջին իջեւանում, ուր ժամադիր էր եղած Ասլանը ինձ սպասելու, նրան չգտանք: Դա մի փոքրիկ հայաբնակ գիւղ էր Քրդերի հետ խառը: Բայց երբ մօտեցանք գիւղին, մի մարդ դուրս եկաւ իմ առաջ, երեւում էր, որ նա մեզ սպասում էր:

— Ի՞նչպէս է քո անունը, հարցրուց նա:

— Ֆարհատ:

Նա հանեց իր ծոցից մի կնքած թուղթ եւ տուեց ինձ: Նրա մէջ գրած էին այս խօսքերը.

«Ֆարհատ, մի դէպք առիթ տուեց ինձ շեղուիլ այն ճանապարհից, որ ուղղակի տանում է դէպի Վան: Ներեցէք, որ չկարողացայ սպասել քեզ: Այս մարդուն պատուիրած եմ, որ քեզ ինձ մօտ բերէ: Նա գիտէ իմ տեղը: Ասլան»:

Թուղթը կարդալուց յետոյ այն մարդը հարցրուց.

— Եթէ այստեղ հանգստանալու միտք չունէք, ես այս րոպէիս էլ պատրաստ եմ ձեզ առաջնորդելու:

Այս տղամարդը հագնուած էր բոլորովին քրդի ձեւով, եւ եթէ նա հայերէն չխօսէր, ես նրան քուրդ պիտի կարծէի: Զէնքերը նոյնպէս քրդի էին՝ երկար նիզակը ձեռին, մի զոյգ ատրճանակներ գօտումը խրած, ահագին երկաթապատ վահանը ուսին գցած եւ կեռ սուրը կողքից քարշ տուած:

Նա սկսեց քրդերէն խօսել Մըհէի հետ: Երեւում էր, երկուսն էլ ճանաչում էին միմեանց:

Ինձ էլ ծանօթ երեւաց այն հսկայ տղամարդի դէմքը, որպէս թէ միանգամ պէտք է տեսած լինէի նրան: Իսկոյն մտաբերեցի, որ դա այն երկու գէյթունցի տղամարդերից մէկն է, որոնց ես տեսայ արաբական մենարէթում, այն գիշերը, երբ առաջին անգամ հանդիպեցայ Կարոյին: Այժմ հասկացայ, թէ ի՞նչու Ասլանը փոխել էր իր ճանապարհի ուղղութիւնը. երեւի, գէյթունցին նրան մի անակնկալ բան հաղորդած պէտք է լինէր, որ առիթ էր տուել նրան թողնել ուղղակի Վան գնալը:

Վերջացնելով իր խօսակցութիւնը նրա հետ, Մըհէն դարձաւ դէպի ինձ այս խօսքերով.

— Ես հիմա գիտեմ, թէ ուր է գնացել Ասլանը, ես քեզ կը տանեմ ուղիղ նրա մօտ, այս մարդը մեզ պէտք չէ:

— Բայց դու ճանապարհը ճանաչում ե՞ս, հարցրի ես:

— Սատանայի պէս:

— Բայց քանի որ դուք չէք ուզում այստեղ հանգստանալ, սպասեցէք, մինչեւ ես մի բան կը բերեմ ճանապարհին ուտելու համար, ասաց գէյթունցին եւ վազեց դէպի գիւղը:

Նա մտաւ գիւղի ծայրումը գտնուած տներից մէկի մէջ եւ քանի րոպէից յետոյ դուրս եկաւ մի մաղ ձեռին բռնած: Նրա մէջ դրած էին մի քանի հատ տափակ, լայն եւ բոլորակ հացի նման բաներ, մի փոքր դեղնագոյն, եւ երեսներն օծած մեղրով: Դա չորացրած սեր էր. բաւականին հաստ զանգուածով, Հայաստանի պարարտ կաթի արդիւնքն էր:

Մըհէն երկու հատ առեց, եւ փողի նման գալարելով, մի րոպէում կերաւ:

— Մըհէն էսպիսի սատանայական բաներով չի կշտանայ, գնա, հաց բեր, ասաց գէյթունցուն:

Բայց ես մէկ հատի կէսը հազիւ կարողացայ ուտել, այնքան պարարտ եւ սնընդարար էր սերը:

— Ես հաց ունեմ հետս վերառած, երբ որ քաղցած լինես, կը տամ. հիմա գնանք, ուշ է, Մըհէ, ասեցի նրան:

— Հիմա տուր, երբ փորս դատարկ է:

ՐԱՖՖԻ

(Շար.)

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

*ՄՈՍԿՈՒԱՅԻ* Կոմսոմոլսքայա Փրաւտա *թերթին համաձայն*, 1957 – 1958 *տարե – շրջանին չորս հազար երեք հարիւր ու – սանողներ արտաքսուած են Լենինկրատի համալսարանէն եւ բարձր. կրթարաննե – րէն։ Ուսանողները ցած թիւեր ստացած էին քննութեանց մէջ ։*

*ՍՊԱՆԻՈՅ Նախագահ Ֆրանքոյի կինը տաջի օր հրաւիրուած էր Պարսելոնայի կոմսին եւ կոմսուհիին կողմէ։ Մատրիտի շրջանակները մեծ կարեւորութիւն կ'ըն – ծայեն այս տեսակցութեան, նկատելով որ անցեալ աշունէն ի վեր յարաբերու – թիւնները խզուած էին արքայական ըն – տանիքին եւ Ֆրանքոյի միջեւ ։ Կը կար – ծուի թէ Տոն Խուան պիտի վերահաս – տատուի Սպանիոյ գահուն վրայ ։*

*ԼԵՀԱՍՏԱՆԻ մէջ ձերբակալուած եւ մին – չեւ hoթը տարուան բանտարկութեանդա – տապարտուած են «ազգայնական Գերմա – նացիներ» որոնք կ'աշխատէին Սիլէզին Լեհաստանէն անջատելու եւ Գերմա – նիոյ միացնելու համար ։*

*ԴԱՄԱՍԿՈՍԷՆ կը հաղորդեն թէ արա – բական օդանաւ մը, որ Թուրքիա կը կատա – րէր Սուրիոյ վրայ, Սուրիացիներու ըս – պառնալիքին տակ ստիպուած է իջնել Դամասկոսի օդակայանը։ Սուրիական մամուլին համաձայն օդաչուն ամերիկա – ցի էր։*

*ՊԱՐՍԿԱՍՏԱՆԻ կայսերական պալատը ի վերջոյ հրատարակեց ամուսնալուծման պաշտօնական զեկոյցը։ Այնպէս կ'երեւի թէ Շահը չէր ուզած մահմետական սո – վորութեան համաձայն պարզապէս կինը ձգել, այլ եւրոպական ձեւով ամուսնա – լուծուիլ՝ փոխադարձ համաձայնու – թեամբ։ Պաշտօնական զեկոյցը կը շեշտէ թէ Սորայա եղած է միշտ գիտակից կայսրուհի մը եւ պետական շահն է մի – այն որ կը պատրաստէ այս բաժանումը, հակառակ երկուքին սիրոյն ։ Սորայա իբրեւ վնասուց հատուցում պիտի ստա – նայ 56 միլիոն ֆրանք եւ կարեւոր ամսա – կան մը։ Կրնայ պահել իր անձնական բո – լոր գոհարեղէնները (արժէք՝ մէկ մի – լիառ) պիտի վերադարձնէ միայն արքա – յական գոհարեղէնները ։ Պատասխանելով Թեհրանի զեկոյցին, Սորայա որ միշտ Հօրը մօտն է, Քոլոներ, յայտնեց իր կար – գին թէ ցաւով կը բաժնուի կայսրէն եւ իր երջանկութիւնը կը զոհէ պետական շահերուն։ Սորայա 26 տարեկան է, 7 տարիէ ի վեր ամուսնացած էր Շահին հետ ։*

*ՄՈՆԱՔՈՅԻ իշխան. Ռէնիէ եւ իշխա – նուհի Կրէյս երկրորդ զաւակ մը ունե – ցան, Ալպէր Բ.։ Լուրը հաղորդուեցաւ բնակչութեան թնդանօթի* 101 *հարուած – ներով ։*

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

*ՄԱՐՍԷՅԼ.— Սէն Ժերոմի Հ. Յ. Դ. Հայաստան ենթակոմիտէն իր ցաւակցու – թիւնները կը յայտնէ Պ. Յակոբ Կիրա – կոսեանի զաւակէն մահուան առթիւ իր պարագաներուն եւ Տէր եւ Տիկին ընկեր Սահակ Յարութիւնեանի եւ զաւակնե – րուն ։*

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

*ԿՐԸՆՈՊԼԸ.— Տէր եւ Տիկին Ճէլալեան հազար ֆրանք կը նուիրեն դպրոցի ֆոն – տին, փոխան ծաղկեպսակի Տիկին Ովսաննայ Յովհաննէսեանի մահուան առ – թիւ ։ Տէր եւ Տիկին Մութաֆեան հազար ֆր. կը նուիրեն դպրոցի ֆոնտին, փո – խան ծաղկեպսակի Պ. Յովհաննէս Արապ – եանի մահուան առթիւ ։*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Հայ Կարմիր Խաչի Ֆէօնվիլիէի օգա – փոխութեան կայանին կը նուիրեն.— Տէր եւ Տիկին Նշան Եղեկիէլեան* 25.000 *ֆր., Պ. Պ. Ժիրայր Զիլինիկիրեան հինգ հա – զար ֆր., Մինաս Աթալյահ երկու հա – զար ֆր., իր կնոջ մահուան Բ. տարելի – ցին առթիւ։ Պ. Պ. Քիլէճեան հազար ֆր., Գալանճեան հազար ֆրանք ։*

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*Սերաստիոյ Դաւրայի Հայր. Միութեան ժողովը, տեղի պիտի ունենայ Մարտ* 30*–ին, կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, Իսիի Խրիմեան դպրոցին մէջ։*

## ՆՈՒԷՐՆԵՐ

*Յ. Կ. Խաչի Կեդր. վարչութիւնը շը – նորհակալութեամբ ստացած է կայանէ չէնքին համար Ալֆորվիլի մասնաճիւղէն հարիւր հազար ֆրանք։*

*Նոյն մասնաճիւղի միջոցաւ Մարտիրոս Աղամեանէ երկու հազար ֆրանք իր զաւ – կին գինուորութենէ անվտանգ վերադար – ձին առթիւ ։*

## ԿՈՉ ԵՒ ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Լիոնի եկեղեցւոյ շինութեան գործը յառաջացած վիճակ մը ունենալով հան – դերձ, վերջերս նիւթական անձուկ կա – ցութիւն մը ունի։ Մասնաւոր նամակնե – րով կոչ ըրինք մեզի ծանօթ և ազնուհայ – րենակիցներու, որոնք ասկէ առաջ ոչ մի – այն մեզի պատասխանած մէկ անգամէն աւելի, ինչպէս Պ. Նուպար Յովհաննէս – եանը որ թերեւս վեցերորդ անգամն է որ կը պատասխանէ մեր կոչին ։*

*Սորբեւ կ'արձանագրենք մեր կոչին պատասխանող անձերու նուիրատուու – թեանց ցանկը։ Նոյն ատեն համոզումով սպասելով որ մեր միւս նամակներուն ալ չուտով նպաստաւոր պատասխաններ պի – տի ստանանք ։*

*Փարիզէն Պ. Գէորգ Պագըրճեան հա – րիւր հազար ֆրանք, Պ. Նուպար Յով – հաննէսեան* 25 *հազար, Պ. Վահէ Ֆրէնկ – եան* 25 *հազար ։*

*Թուլոնէն Պ. Մոսկոֆեան տասը հազար ֆրանք։ Պ. Մոսկոֆեան ինքնաբերաբար նուիրած է սոյն գումարը ։*

*ՎԱՐՉՈՒԹԻՒՆ*

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

*Հերթական դասախօսութիւնը այս չո – րեքշաբթի ժամը 21ին, Քաղէի վերնա – յարկը ։*

*Կը խօսի Ռ. ԹԱԴԷՈՍԵԱՆ ։*

*Նիւթ՝* խղճի ազատութիւնը եւ կրօնա – կան պաշտամունքը հին եւ նոր Ռուսիոյ մէջ։ *Մուտքը ազատ է ։*







Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ԵՒ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

*Կազմակերպուած Անիէռ – Պուա Քո – լոմպի «ԱՐԱՄ» եւ «ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔ – ԵԱՆ» խումբերու կողմէ ։*

*Մասնակցութեամբ Կապոյտ Խաչի եւ Նոր Սերունդի մասնաճիւղերուն ։*

*Ի նպաստ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ «ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ» սրահին ։*

*Կիրակի, Մարտ 30ին, կէսօրէ վերջ ժամը չորսէն 12, Անիէռի քաղաքապետա – րանի շքեղ սրահներուն մէջ,*

**Centre Administratif et Social**
**Place de l'Hôtel de Ville**

Ա. ԳՄԲԷԹԵԱՆ եւ ԳՐԻԳՈՐ ՎԱՀԱՆ

*Կը ներկայացնեն փարիզահայ բեմի ընտր – ուած ուժերով*

*ԼՈՒՍԱՒՈՐՉԻ ԿԱՆԹԵՂԸ*
*(Թատերգութիւն մէկ արար)* Գ. Վահանի
Ա. Գմբէթեան, Օր. Շուշան Գէորգեան, Գրիգոր Վահան։

ՕՐՀՆՈՒԱԾ ԱՐՀԵՍՏԸ
*Մոլիէռի «Ակամայ Բժիշկը»էն հայաց – ուած զաւեշտ երեք արար ։*

*ՊԱՐԱՀԱՆԴԷՍ*

**Fantasio Dancing**
LOS RUMBEROS

*նուագախումբով ։*
*Ղեկավարութեամբ* ՌՈԺԷ ՏՈԹԻՒԼԻ ։
*եւ երգիչ* ՊԱՌՕՆԻ։
*ձոխ պիւֆէ ժողովրդական գիներով ։*
*Մուտք՝* 300 *ֆրանք ։*

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

*ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր շրջանները.—*

Նիկոլ Դումանի *ենթակոմիտէն այս կի – րակի կէսօրէն վերջ ժամը* 3.30*ին ։*

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի *Շրջ. վար – չութիւնը այս երկուշաբթի, ժամը 9ին ։*

Սէնթ Մարկրիթի *Համազասպ խումբը, այս Չորեքշաբթի ժամը 21ին ։*

Պոմոնի *Ջաւարեան ենթակոմիտէն, այս Հինգշաբթի ժամը 21ին ։*

Սէն Լուի *Ակնունի ենթակոմիտէն այս Շաբաթ, ժամը 21ին։*

*Ժողովները տեղի կ'ունենան սովորա – կան հաւաքատեղիները ։ Ընկերներուն ներկայութիւնը անհրաժեշտ է ։*

*Ներկայ կ'ըլլան Շրջ. կոմիտէի ներկա – յացուցիչները եւ ընկ. Վ. Իշխանեան ։*

*ՓԱՐԻԶԻ Հ. Յ. Դ. Քրիստափոր խումբժո – ղովը այս երեքշաբթի, ժամը21ին, Քաֆէ Ռեժանի մէջ։ Բոլոր ընկերներու ներկա – յութիւնը անհրաժեշտ է ։*

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ



## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*Ապրիլեան Սգահանդէսը Ապրիլ 27ին, Վիէնի մէջ։ Նախաձեռնութեամբ Վիէնի Ազգ. Միութեան ։*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Յ. Կ. Խաչի Վիէնի վարչութիւնը շընորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Ուզունեաններէ իրենց աղջկան Օր. Անժէլի ապաքինման առթիւ հազար ֆր.: Ինչպէս նաեւ Տէր եւ Տիկին Խաչիկ Զօպոյեանէ (Փոն Թ'էվէք) իրենց աղջկան՝ Օր. Մարիի ապաքինման առթիւ հազար ֆրանք, ի նպաստ դպրոցներուն :

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Օննիկ Եղիաեան կը ծանուցանէ թէ այս կիրակի առաւօտ Լիոնի Հայոց Ս. Աստուածածին Մատուռին մէջ (69րիւլուի Պլաճ) հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իր ողբացեալ կնոջ Մառի Եղիաեանի (ծնեալ Ասլանեան) կսկծալի մահուան քառասունքի առթիւ :

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները :

×

Այրի Տիկին Գասպարեան, Տէր եւ Տիկին Թօփուզեան կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս կիրակի առաւօտ, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցին իրենց ամուսնոյն եւ եղբօր՝ ՕՆՆԻԿ ԳԱՍՊԱՐԵԱՆի մահուան Բ. տարեդարձին առթիւ: Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները :

## ՍԻՓԱՆ - ԿՈՄԻՏԱՍ

Երգչախումբին տարեկան մեծ համերգը
Կիրակի, Մայիս 11ին, Սալ Կավօ
Յայտագրին գործիական բաժնին մէջ՝

### ԱԻԱՐԱՅՐ
### ԳՈՒՐԳԷՆ Մ. ԱԼԷՄՇԱՀԻ

Համանուագային դիւցազնական քերթուածը :

Մանրամասնութիւնները՝ յաջորդով :

## ՀԱՅ ԳՐՈՂՆԵՐՈՒ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ
### ՀՐԱՒԷՐ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎԻ

Հայ Գրողներու ընդհ. ժողովը տեղի պիտի ունենայ ամսոյս 29ի Շաբաթ երեկոյ, ժամը վեցին, Աճէմեան ճաշարանը, 12 րիւ Քատէ :

ՕՐԱԿԱՐԳ.— Վարչութեան հրաժարականը եւ նոր վարչութեան ընտրութիւն :

Կը խնդրուի բոլոր ընկերներէն ներկայ գտնուիլ: Առանձին հրաւիրագիր չէ ղըրկուած : Վարչութիւն

## ՊԱՏՐԱՍՏՈՒԵՑԷՔ
## ՀԱՃԵԼԻ ՕՐ ՄԸ ԱՆՑԸՆԵԼՈՒ

Սեբաստիոյ Դաւրայի Հայր. Միութեան խնջոյքը Մարտ 30ին, Կիր. կէսօրէ վերջ ժամը երեքին, Իսիի Խրիմեան դպրոցին մէջ :

Գեղարուեստական նոխ բաժինով
Երգ, արտասանութիւն եւ անակնկալներ :

Նուագ. ծանօթ հայրենակիցներու կողմէ :

Միրինեան Շիրվանեան (ուտ), Շիմաւոն Պալեան (ջութակ), պիտի նուագեն հայկական պարեր :

Ճոխ պիւֆէ ժողովրդական գիներով : Թերթանուչ եւ Զատկուան հաւկթախաղ:

Կը հրաւիրենք բոլոր հայրենակիցները որ իրենց ներկայութեամբ քաջալերեն մեր այս բարենպատակ ձեռնարկը :

Մուտքը ազատ է :

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ
### ՍՈՒՐԲ ՇԱԲԱԹ

Կիրակի Ծաղկազարդ, ժամը 9.30ին ժամերգութիւն :

Ժամը 10.30ին ձայնաւոր պատարագ : Ժամը 16ին երեկոյեան ժամերգութիւն եւ Դռնբացէք :

Ժամը 17ին հանդիսաւոր պատարագ :

Փնտռեցէք Ծատուր Պէրպէրեանի

## ԿԱՐՄԻՐ ՓՈԹՈՐԻԿԸ
(վէպ՝ Երկունքի օրերէն)

Որուն հերոսները, խորհրդաւոր չարժումներով ձեզ պիտի առաջնորդեն տեսնելու իրենց տարաբախտ կեանքին երազ Արշալոյսը :

Ստանալու համար դիմել հեղինակին՝

Z BERBERIAN, 104, AV. D'ITALIE, PARIS 13.

Կամ հայ գրավաճառներուն :

Գինը 500 ֆրանք: Թղթատարին ծախքը գնողին հաշւոյն :

Imprimé sur les presses du journal HARATCH
— 17. Rue Bleue. 17 — PARIS (9e) —

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼ Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն ժողովի կը հրաւիրէ .—

Վռամեան ենթակոմիտէն այս Չարաթ իրիկուն ժամը 21ին :

Ժողովը տեղի կ'ունենայ սովորական հաւաքատեղին :

Ներկայ կ'ըլլան Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչը եւ Ընկեր Վ. Իշխանեան :

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Ազրիւր - Սերոբ - Մ. Եօթնեղբայրեան խումբին ժողովը, այս Շաբաթ, ժամը 20.30ին, սովորական հաւաքատեղին: Ներկայ կ'ըլլայ Շրջ. կոմիտէի ներկայացուցիչը : Պարտաւորիչ ներկայութիւն :

ԿՐԸՆՈՊԼԸ.— Հ. Յ. Դ. Եօթնեղբայրեան կոմիտէին ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ օր, դպրոցի սրահը: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է :

Հ. Յ. Դ. Սէնթ Էթիէնի եւ Սէն Շամոնի ընկերական խառն ժողովը տեղի կ'ունենայ այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, մատուռին յարակից սրահը:

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԽՆՋՈՅՔ-ԹԷՅԱՍԵՂԱՆ

Կազմակերպուած Կապոյտ Խաչի Մարսէյլի Շրջ. վարչութեան եւ շրջանի մասնաճիւղերու կողմէ :

Նախագահութեամբ՝
ՏԻԿ. Տ. ՍԷՐԷՆԿԻՒԼԵԱՆի
Կը խօսի ընկ. Վ. ԻՇԽԱՆԵԱՆ

Այս Կիրակի, ժամը 21ին, Սալոն Նոոմանտի, Պուլվար տ'Աթէն :

Սիրով կը հրաւիրուին բոլոր ընկերուհիները եւ համակիրները :

### ՀԱՆԴԷՍ - ՑԵՐԵԿՈՅԹ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նիկոլ - Դուման ենթակոմիտէի կողմէ : Այս կիրակի կէսօրէ վերջ ժամը երեքին, Պիվէռի Գեղունի սրահին մէջ:

Կը խօսի՝ ընկեր Վ. ԻՇԽԱՆԵԱՆ
Գեղարուեստական ճոխ բաժին :
Մուտքը ազատ է :

### ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ ԵՒ ՃԱՇ

Մարսէյլի յարգոյ հասարակութիւնը սիրով կը հրաւիրուի հոգեհանգստեան պաշտօնին որ տեղի պիտի ունենայ այս Կիրակի, ժամը 10.30ին, Փրատոյի Մայր Եկեղեցիին մէջ, Բարեգործականի հանգուցեալ հիմնադիրներուն, բարերարներուն եւ անդամներու յիշատակին :

Ս. Պատարագէն վերջ հրաւիրեալք եւ փափաքողք պիտի առաջնորդուին արդէն ծանուցուած հանդիսաւոր ճաշին, սարքուած Օթէլ տը լա Բլաժի չքեղ սրահին մէջ, 595 Ավընիւ տիւ Փրատօ :

## ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ
### ԶԱՏԿՈՒԱՅ ԱՐԱՐՈՂՈՒԹԵԱՆՑ

Կիրակի, Ծաղկազարդ, հանդիսաւոր Ս. պատարագ ժամը 10ին, նոյն օրը երեկոյեան Դռնբացէք ժամը չորսին :

×

ՎԱՐԱԳԱՅ Ս. ԽԱՉ - ԱՌՆՈՒՎԻԼ
ԿԻՐԱԿԻ Ծաղկազարդ, ժամերգութիւն 8.30ին, երեկոյեան Դռնբացէք 17.30ին:

ՇԱՎԻԼ
ԿԻՐԱԿԻ, Ծաղկազարդ, ժամերգութիւն 8.30ին, Դռնբացէք 17ին:

×

ԼԻՈՆ
ՇԱԲԱԹ, Նախատօնակ Ծաղկազարդի, երեկոյեան ժամը 17.30ին:
ԿԻՐԱԿԻ, ժամերգութիւն 7.30, Պատարագ 10ին, Դռնբացէք 5ին :

×

ՄԱՐՍԷՅԼ, ՄԱՅՐ - ԵԿԵՂԵՑԻ
Կիրակի, Ծաղկազարդ, պատարագ ժամը 10ին, երեկոյ Դռնբացէք ժամը 5ին:

ԳԱՄՓ. ՖՐԵԶ Ս. ԿԱՐԱՊԵՏ
Կիրակի, Ծաղկազարդ, Սկիզբ ժամերգութեան ժամը 8, Ս. պատարագ ժամը 10, Դռնբացէք ժամը 16:

×

ՄԱՐՍԷՅԼ — ՍԷՆԹ ԱՆԹՈՒԱՆ
Շաբաթ, Մարտ 29.— Ժամերգ. ժամը վեցին :
Կիրակի, Ծաղկազարդ.— առաւօտեան ժամերգութիւն ժամը եօթին, պատարագ ժամը տասին, քարոզ 11ին, երեկոյեան Դռնբացէք ժամը վեցին :

×

ՊՈՒԼ. OSSO
Կիրակի, Ծաղկազարդ, Սկիզբ ժամերգութեան առաւօտուն ժամը 7.30, Ս. պատարագ ժամը 10ին, Երեկոյ, Դռնբացէք ժամը հինգին :

## ԱՊՐԻԼ ՑԻՆ

Կը լրանայ ՅԱՌԱՋի հրատարակու–թեան (նոր շրջան) 14րդ տարին: Մեր բաժանորդներէն կը խնդրենք անյապաղ նորոգել իրենց բաժանորդագրութիւնը, առանց սպասելու մասնաւոր դիմումի:

Հին հաշիւ ունեցողներուն կը յիշեցը–նենք թէ վարչութիւնը ի վիճակի չէ ա–պառիկ թերթ դրկելու եւ հետզհետէ պիտի դադրեցնէ առկախ հաշիւ ունեցող–ներու թերթերը:

«*Յառաջ*»ի Շէք – Փոսթալի թիւն է՝ 15069 – 82, եւ վերապահուած է միայն «*Յառաջ*»ի հաշիւներուն (ծանուցում – գործակալութիւն, բաժանորդագրու–թիւն):

Այս յիշեցումը կ'ընենք, որովհետեւ հակառակ մեր կրկնակի խնդրանքին, այս թիւին վրայ կը դրկուին ուրիշ թերթերու կամ կազմակերպութեանց պատկանող գումարներ: Նման գումարներ դրկել մի–այն՝ ՄԱՆՏԱ – ՔԱՐԹՈՎ:

*Շնորհակալութիւններով*
*ՎԱՐՉՈՒԹԻՒՆ*

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

*Ցՙ. կ. Խաչի Պանեէօ Քաչանի վարչու–թիւնը շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Կարապետ Տօնիկեանէ 1500 ֆրանք, Տէր եւ Տիկին Աւետիս Եագուպ–եանէ հազար ֆրանք, փոխան ծաղկեպսա–կի ողբացեալ Աւետիս Պետոյեանի մահ–ուան առթիւ:*

×

*Տակառեան եւ Շիրինեան ընտանիքները երեք հազար ֆրանք կը նուիրեն Հայ Մը–շակոյթի տան, փոխան ծաղկեպսակի ող–բացեալ Տիկին Մ. Տէմիրճեանի (Շաւիլ) մահուան առթիւ: Նոյն առթիւ Տէր եւ Տիկին Ֆիլիփ Յովհաննէսեան երկու հա–զար ֆրանք նոյնպէս Մշակոյթի Տան:*

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## Կ. ՄԵՀԵԱՆԻ ԱՊԱԶԳԱՅՆԱՑՄԱՆ — ՎՏԱՆԳԸ —

ԳԻՆ՝ 250 ՖՐԱՆՔ

Կարելի է ստանալ «*Յառաջ*»ի խմբա–գրատունէն եւ հայ գրատուններէն:





## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Փարիզի Եկեղեցւոյ Կեդր. Կրթ. Յանձ–նաժողովը, տարեվերջի հանդէսներուն, իր դպրոցներու յաջողակ աշակերտներուն նուիրելու համար, էքս լէ Պէնի՝ դաշտա–հանդէսի յանձնախումբէն, Պ. Արտաշէս Փամպուքճեանի միջոցով, շնորհակալու–թեամբ ստացած է, 25 հատ ֆրանսերէն Հայոց Պատմութեան գիրքերը:*

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Համգստեան տուներու օրը
Յունիս մէկին







Imprimé sur les presses du journal HARATCH
17. Rue Bleue. 17 – PARIS (9e)